Ճարահատ, Աւգոստոս կանչեց Կայոս Կեսարը ու կարեւոր ուժերով ղրկեց Արեւելք: Կայոս Կեսար Սուրիա հասաւ Ք. ե. 1ին: Երբ Տիգրան տեսաւ համէական բանակին մօտենալը եւ Պարթեւներու տկարութիւնը, խոհեմութիւն համարեցաւ նուէրներով Աւգոստոսին դիմելու եւ անկէ խընդրելու Հայաստանի թագը: Այս դիւանագիտական քայլը հաճեցուց Աւգոստոսը, եւ այս բարեկամութիւնը կ'ապացուցուի Տիգրան–Աւգոստոսի այն դրամով որ նկարագրուեցաւ առաջին գլուխին մէջ, (դրամ թիւ 1):

Ինչպէս տեսանք Տիգրան Դ.էն վերջ Հայաստանի գահին վրայ նստան Ատրպատականի Արիոբարզանէսը եւ անոր յաջորդ ու որդին՝ Արտաւազդը: Արտաւազդի յաջորդեց Տիգրան Ե.ը, որ շուտով գահընկէց եղաւ եւ ապաստանեցաւ Հռոմ: Ահա այս միջոցին էր որ Աւգոստոս մեռաւ, եւ իր անունը կրող ուրիշ հռոմէահայկական դրամներ այլեւս չկտրուեցան:

## ԳԼՈՒԽ Դ.

## ՆԵՐՈՆԻ ԴՐԱՄՆԵՐԸ

(Ք. Ե. 54—68)

*Օգոստոս կայսեր մահէն ետք անոր յաջորդեց իր հօրեղբօրորդին՝ Տիբերիոս Կեսարը, որ արդէն 55 տարեկան էր։ Տիբերիոս կարող անձ մըն էր եւ ջանաց հռոմէական կայսրութեան հիմերը հաստատել։ Իր ժամանակն էր որ Գերմանիկոս Հայաստան եկաւ եւ Հայոց փափաքին գոհացում տալով Զենոնը Արտաշատի մէջ թագաւոր պսակեց եւ դայն անուանեց Արտաշէս Գ.։ Այս առթիւ կոխուած դրամներուն մասին խօսեցանք Գլուխ Ա.ի մէջ, զանոնք նկատելով հայկական եւ ոչ թէ հռոմէական դրամներ։*

*Արտաշէսի մահէն վերջ, Պարթեւներու Արտաւան Գ. թագաւորը յաջողեցաւ Հայաստանի գահը բարձրացնել իր Արշակ որդին։ Տիբերիոս սակայն հակառակեցաւ այս քայլին եւ Հռոմէացիք Հայաստանի թագաւոր կարգեցին Վրաստանի Փարսման թագաւորին եղբայրը՝ Միհրդատ։ Նոյն ատեն Հռոմէացիք արդէն սկսած էին միջամտել Պարթեւաստանի ներքին խնդիրներուն ալ։*

*Տիբերիոս մեռաւ 37ին եւ անոր յաջորդեց Կայոս Կեսարը, որ կը կրէր Կալիգուլա*

մականունը : Կալիգուլա տիրեց չորս տարի․ բայց այս միջոցին անհատականալի պատճառներով ան Հայաստանի Միհրդատը պահընկէց բրաւ եւ աքսորեց, առանց նոր թագաւոր մը կարգելու :

Կալիգուլա սպանուեցաւ 41 թուականին եւ անոր յաջորդեց Կղաւդիոս կայսրը, 41—54 : Կղաւդիոս Միհրդատը նորէն Հայաստանի թագաւոր կարգեց — 43ին —, եւ որ թագաւորեց ութը տարի եւս : Հակառակ իր երկարատեւ թագաւորութեան, այս թագաւորէն որեւէ դրամներ ծանօթ չեն մեզի : Կը սպասուէր որ կամ զուտ հայկական եւ կամ Կղաւդիոսի դրամներ, որ Հայաստանի անունը կրէին, գոյութիւն ունենային : Թէեւս ժամանակի ընթացքին տաջինէն զանուին, բայց գիտենք որ Կղաւդիոս որեւէ ARMENIA վերտառութեամբ դրամներ չկտրեց :

Միհրդատ սպանուեցաւ դաւաճանօրէն իր եղբօրորդւոյն՝ Հռադամիզդի կողմէ, որ գահը յափշտակեց կաշառելով Հռոմէացիները : Դեռ տարի մը չանցած Պարթեւներու Վաղարշ Ա․ թագաւորը Հայաստան արշաւեց եւ Հայաստանի գահը յանձնեց իր կրտսեր եղբօր՝ Տրդատի : Այնպէս կ'երեւի թէ Հռադամիզդ կարճ ժամանակի մը համար վերագրաւեց գահը, բայց 54 թուականին ստիպուեցաւ վերջնականապէս փախչիլ Հայաստանէն :

Նոյն տարին Կղաւդիոս մեռաւ եւ անոր յաջորդեց 17 տարեկան՝ Գերմանիկոսի՝ թոռ Ներոնը 54—68 :

Տրդատի Հայոց գահին վրայ նստիլը, առանց Հռոմի հաւանութեան՝ կը խանգարէր նախկին կայսերական քաղաքականութիւնը, եւ կը ստիպէր Հռոմը, որ դիմէ զէնքի իր ազդեցութիւնը Հայաստանի վրայ վերահաստատելու համար:

Հռոմէական լէգէոնները յանձնուեցան կարող զօրավար Կորբուղոնին: Ան, մէկ երկու տարի զինուորները մարզեց ու վարժեցուց Հայաստանի օդարաժնին ու պայմաններուն: Տրդատ ջանաց համաձայնութեան գալ, բայց բանակցութիւնները ձախողեցան եւ Հայերը միայնակ քանի մը տարի դիմադրեցին հռոմէական լէգէոններուն: Պարթեւները ներքին խռովութիւններու պատճառաւ անկարող էին օգնելու Հայերուն:

Կորբուղոն որոշեց ստիպել Տրդատը, որ համաձայնութեան գայ, եւ արշաւեց Արտաշատի վրայ: Տրդատ փոխանակ պաշտպանելու քաղաքը, քաշուեցաւ Ատրպատական. իսկ Կորբուղոն 58ի ձմեռն անցուց Արտաշատի մէջ: Յաջորդ գարնան արշաւեց Տիգրանակերտի վրայ, բայց որովհետեւ պէտք եղածին չափ զինուոր չունէր Արտաշատը պահելու, հեռանալէ առաջ քաղաքն այրեց ու կործանեց:

Արտաշատի կործանումը 59ին, սաստիկ զայրացուց Հայերը եւ կռիւը շարունակուեցաւ սաստկութեամբ: Սակայն Կորբուղոնի կազմակերպուած բանակը, հակառակ շարունական հակայարձակումներու, յաջո—

*դեցաւ նոյն տարին Տիգրանակերտն ալ գրաւել: Այս առթիւ մասնաւոր խրախճանքներ ու տօնակատարութիւններ սարքուեցան Հռոմի մէջ:*

*Նոյն տարին Կեսարիոյ փողերանոցէն ելան Ներոնի դրամներ, որոնց վրայ կը տեսնենք Հայաստանի անունը*[1]*:*

*Երկու նոյն տեսակ դրամներ, երկդրամ* Didrachm *եւ կէս-դրամ* Hemidrachm *ծանօթ են:*

**20.** ա, բ. *Երկդրամ* [RIC-37, BMC-405.]

Ա. կողմը՝ *Ներոնի դափնեպսակ գլուխը աջ դարձած, եւ շրջանակի մէջ ժամացոյցի սլաքի հակառակ ուղղութեամբ գրուած՝*

NERO CLAVD. DIVI. CLAVD. F. CAESAR AVG GERMANI

(Nero Claudius divi Claudi filius Caesar Augustus Germanicus.)

*Այսինքն՝ Ներոն Կղաւդիոս, որդի աստուածային Կղաւդիոսի, Կեսար, Օգոստոս, Գերմանիկոս*[2]*:*

Բ. կողմը՝ *Յաղթանակը աջ կը քալէ, աջ ձեռքը բռնած է պսակ մը եւ ձախին՝ արմաւենիի ճիւղ մը: Գրութիւնը՝* ARME-NIAC

---

[1] E. A. Sydenham, The Coinage of Caesarea in Cappadocia, London, 1933, p. 40. No. 80, 81.

[2] Germanicus*ը պատուոյ՝ ժառանգական տիտղոս մըն էր, որ Ներոնի գերդաստանը գործածեց: Այս բառը պէտք չէ* Գերմանիոյ յաղթող *թարգմանել, ինչպէս կը թարգմանուի* Հայաստանի յաղթող:

*Այսինքն՝ Հայաստանի յաղթող* (°)։
*Կշիռ* 7·50 *կրամ*, — *Պատուկեան հաւա-քածոյ*։



20
AR - ԱՐ

**21.** ա, բ· *Կէս-դրամ*, [RIC-38, CRE-406.]

*Ա. եւ Բ. կողմերը թիւ* 20*ի պէս*։

*Կշիռ* 1·71 *կրամ*, — *Պատուկեան հաւա-քածոյ*։

Mattingly[3] *կ'ըսէ թէ Ներոն երբեք* Armeniacus *այսինքն Հայաստանի յաղթող տիտղոսը չառաւ, այնպէս որ* Armeniac *պէտք է կարդալ* Armeniaca *եւ ոչ թէ* Armeniacus։



21
AR - ԱՐ

---

[3] H. Mattingly and E. A. Sydenham, The Roman Imperial Coinage, London, 1923. Vol. I, p. 147. No. 37, 38;
H. Mattingly, Coins of the Roman Empire, Vol. I, pp. CLXXXV, LXXIX, 2811.

Յաջորդ տարին Տրդատ փորձեց Հայաստանը վերագրաւել, բայց իր ջանքերը ապարդիւն անցան:

Հռոմի նպատակն էր իրեն կողմնակից թագաւոր մը նստեցնել Հայոց գահին վրայ եւ որոշուեցաւ Տիգրան Զ.ը, որ նախկին Տիգրան Ե.ի եղբօրորդին էր, Հայոց թագաւոր կարգել: Այսպէսով Հռոմի մէջ մեծցած անձ մը, որ ուծացած էր ու վարժած Հռոմի թոյլ կեանքին, կը սպասուէր որ հլու եւ հնազանդ մնայ Հռոմի քաղաքականութեան:

Կորբուլոն, մաս մը հռոմէական զինուորներ ձգեց Հայաստանի մէջ, իբրեւ թիկունք Տիգրան Զ.ի. եւ նոյն ատեն Հայաստանի հողէն որոշ մասեր բաժնեց Հռոմի դաշնակից հպատակ թագաւորներուն:

Այս կարգադրութիւններն անշուշտ հաճելի չէին հայ ժողովուրդին, եւ երբ Պարթեւաստանի Վաղարշ Ա.ը որոշեց Տրդատը նորէն Հայաստան ղրկել ու գահը վերադարձնել զինու զօրութեամբ, հայ ժողովուրդն աջակցեցաւ իր նախկին թագաւորին:

Հռոմէացիք դարձեալ փորձեցին Հայաստանը պարզ հռոմէական նահանգի մը վերածել, բայց չյաջողեցան եւ իրենց զօրավարին ապիկարութեան պատճառով ալ Հայաստանէն վտարուեցան: Սակայն ոչ Վաղարշ եւ ոչ ալ Կորբուլոն մտադիր էին շարունակել երկարատեւ պատերազմները: Բանակցութեան ընթացքին՝ որոշուեցաւ վերա-

դառնալ նախկին համաձայնութեան, որ էր՝ Հայաստանի թագաւորը Հռոմի կայսրէն ստանայ իր թագը: Եւ ահա 64—65 թուականներուն խաղաղութիւնը հաստատուեցաւ եւ 66ին Տրդատ իր ընտանիքով եւ հետեւորդներով գնաց Հռոմ: Այս ճամբորդութիւնը որ ինն ամիս տեւեց, եւ օրական ծախսը 800·000 սեստերսի հսկայ գումարի մը հասաւ, վճարուեցաւ Հռոմի գանձէն:

Հռոմ հասնելէ վերջ, Տրդատ ծնրադրեց Ներոնի առջեւ եւ ստացաւ դափնեպսակ մը գլխուն վրայ ու հռչակուեցաւ թագաւոր Հայոց: Տրդատ մասնաւոր պատիւներու արժանացաւ եւ Ներոն ոչ միայն հսկայական նուէրներ տուաւ անոր, այլեւ մասնաւոր ճարտարապետներ ղրկուեցան Հայաստան՝ Արտաշատը Ներոնի ծախսով վերաշինելու: Հետաքրքրական է որ վերաշինուած նոր քաղաքը կարճ ժամանակի մը համար կոչուեցաւ Ներոնիա:

Հռոմ թէեւ ինքզինքը յաղթական հռչակեց, սակայն իրականին Հայաստան եղաւ պետութիւն մը, որ Արշակունի թագաւոր մը ունէր եւ կապուած էր Պարթեւստանի: Այնուհետեւ Հայաստան բոլորեց մօտ կէս դարու խաղաղ շրջան մը, որ մեծապէս սատարեց տնտեսական ու քաղաքական բարգաւաճման:

Տրդատ Ա. հիմը դրաւ Հայ Արշակունի Հարստութեան, որ տեւեց մինչեւ 428 թուականը, այսինքն աւելի քան երեքուկէս դար:

Սակայն ոչ Տրդատէն դրամներ հասած են մեզի եւ ոչ ալ անոր ժամանակէն Հայաստանի վերաբերեալ Հռոմէական դրամներ:

Ներոն մեռաւ 68ին, եւ անոր յաջորդեց Վեսպասիանոս — 69—79 Ք. Ե., որ Արեւելք կը գտնուէր: Ան էր որ անդթօրէն ճնշեց հրէական ապստամբութիւնը:

Բասմաջեան[4] Հայաստանի վերաբերեալ դրամ մը կու տայ Վեսպասիանոսի: Այս դրամը որ ոսկի է, կոխուած է 72ին[5], [6]: Դրամին երկրորդ կողմին վրայ կը տեսնուի անձ մը համազգեստով, որ ձախ ձեռքով բռնած է նիզակը եւ աջ ձեռքով վեր կը բարձրացնէ կին մը, որ ծունկի եկած է: Կնոջ գլուխը պսակուած է աշտարակիկներով զարդարուած թագով մը:

Իսկութեան մէջ որեւէ պատճառ չկայ այս դրամը Հայաստանի վերաբերեալ նկատելու: Դրամագիտական մասնագիտական գործերու մէջ, այս դրամին Հայաստանի հետ կապակցութիւն մը ունենալուն որեւէ խօսք չկայ: Այսպէս ոչ Mattingly եւ Sydenham իրենց բազմահատոր Հռոմէական դրամներու աշխատանքին մէջ (Roman Imperial Coinage)[3] եւ ոչ ալ Mattingly իր նոյնչափ

---

[4] Կ. Յ. Բասմաջեան, Հայկական ընդհանուր դրամագիտութիւն, Վենետիկ, 1936, էջ 58:

[5] H. Mattingly and E. A. Sydenham, The Roman Imperial Coinage, London, 1926. Vol. II, p. 57, No. 356.

[6] H. Mattingly, Coins of the Roman Empire, London, 1930. Vol. II, p. 106, No. 504.

կարեւոր աշխատանքին մէջ Coins of the Roman Empire in the British Museum[6] Հայաստան կը յիշեն այս դրամը նկարագրած ատեն:

Ուշադրութեան արժանի է, որ կնոջ գլխուն վրայի թագը հայկական չէ, այլ Սելեւկեան: Ասկէ զատ, 72 թուականին Հայաստան եւ Պարթեւաստան խաղաղ յարաբերութեանց մէջ էին Հռոմի հետ եւ պատճառ չկար Հայաստանը ներկայացնելու իբրեւ ծունկի եկած կին մը:

Հետեւաբար Վեսպասիանոս Հայաստանի վերաբերեալ դրամներ չէ կոխած:

## ԳԼՈՒԽ Է.

## ՏՐԱՅԱՆՈՍԻ ԴՐԱՄՆԵՐԸ

(98—118)

*Ներոնի մահէն* (68 *Ք. Ե.*) *մինչեւ Տրայանոսի կայսր հռչակուիլը,* — 98 *Ք. Ե.* — *Հռոմ գրաւած ըլլալով ներքին խռովութիւններով, Հայաստան բոլորեց խաղաղ շրջան մը։ Այս ժամանակամիջոցին, քանի մը կայսրեր տիրեցին հռոմէական կայսրութեան. իսկ Հայաստանի թագաւոր էին՝ Տրդատ Ա. եւ անոր յաջորդը՝ Սանատրուկ։*

*Սանատրուկի յաջորդեց Աշխադարը, որ Հռոմի հաւատարիմ Պարթեւ թագաւոր Բակուրի որդին էր. եւ այսպէս շարունակուեցաւ նախկին համաձայնութիւնը, որ՝ Հայաստանի պիտի տիրէր Պարթեւ Արտաշէսեան թագաւոր մը, Հռոմի հաւանութեամբ։ Երբ Բակուր մեռաւ, անոր յաջորդ Խոսրով՝ թագազուրկ ըրաւ Աշխադարը, եւ անոր տեղ թագաւոր կարգեց իր որդին Պարթամասիրիս, առանց սակայն Հռոմի հաւանութեան։ Այս, նախատինք էր Հռոմին. որով առիթ տուաւ Տրայանոսին որ Հայաստանի նուաճման ձեռնարկէ։*

*Տրայանոս* 114*ի գարնան, ութը լէգէոններով քալեց Հայաստանի վրայ։ Ինչպէս իր*

*նախորդը Անտոնինոս փորձած էր, Տրայանոսի լքգէոնները հաւաքուեցան Կարնոյ մօտ: Պարթամասիրիս գնաց Տրայանոսի բանակատեղին եւ իր թագը դրաւ Հռոմի կայսեր առջեւ, փափագելով անկէ ստանալ թագը եւ այսպէսով գոհացնել նախկին Ներոնեան համաձայնութիւնը: Տրայանոս սակայն մերժեց այս կարգադրութիւնը՝ պատճառաբանելով թէ Պարթեւները խզած էին համաձայնութիւնը, երբ առանց Հռոմի հաւանութեան, Աշխադարը թագաւորկ ըրած եւ անոր տեղ Պարթամասիրիս դահ բարձրացուցած էին: Պարթամասիրիս կը սպասէր որ թագը ընդունի, ինչպէս Տրդատ ընդունած էր Ներոնէն՝ պատուով եւ բարեկամութեամբ: Տրայանոս զլացաւ թագը. եւ երբ Պարթամասիրիս հռոմէական զինուորներու ընկերակցութեամբ իր երկիրը կը վերադառնար, նենգօրէն սպանուեցաւ. անտարակոյս Տրայանոսի ծրագրով: Անշուշտ այս արարքը պատիւ չէր բերեր Հռոմի կայսեր, եւ թերեւս անոր համար ալ այս դէպքը յիշեցնող դրամները չշարունակուեցան եւ այսօր չափազանց հազուագիւտ են:*

*Այսպէս Հայաստան առանց կռուի, Հռոմէական նահանգ մը դարձաւ, եւ յանձնուեցաւ կուսակալի մը: Եւ այս առթիւ կոխուեցան պղինձէ դրամներ:*

22. ա. *Պղինձ՝ Սեստերս* — Sestertius — [BMC- *էջ* 215].

Ա. կողմը՝ *Տրայանոսի կիսանդրին աջ դարձած, դափնեպսակ եւ զգեստաւոր:*

*Գրութիւնը.*

IMP. CAES. TRAIANO OPTIMO AVG. GER. DAC. TR. P. COS. VI. P. P.

[Imperator Caesar Traiano optimo Augusto Germanico Dacito Pontifico maximo Tribunicia. potestate consuli, sexto, Patri Patriae.]

*Այսինքն՝ Ի պատիւ Տրայանոսի, ինքնակալի Կեսարի ամենաբարւոյ Աւգոստոսափառի — (Յաղթողի) — Գերմանացւոց եւ Դակաց, բարձրագոյն Քրմապետի, Տրիբունի Զ. անգամ հիւպատի, Հօր Հայրենեաց:*

Բ. կողմը՝ *Տրայանոս ձախ նստած բեմի աջակողմը, զինուորական սպայի մը հետ: Աջ ձեռքը երկարած Պարթամասիրիսին, որ աջ կը յառաջանայ, ծնրադիր, երկու ձեռքերը երկարելով Տրայանոսի: Սպայ մը ու վեց զինուորներ զանազան զինանշաններով, նիզակներով ու վահաններով: Գրութիւնը հորիզոնական, դրամին վարի մասին մէջ,*

REX PARTHUS — S. C.

*Այսինքն՝ Պարթեւ Թագաւոր — Ծերակոյտի վճռով.*

*Վիեննայի Պետական Թանգարան:*

*Այս եզակի դրամը կոխուած է* 114—115 *թուականին:*

23. *Պղինձ — Սեստերս* — [RIC-669, BMC- *էջ* 218, C-330].

Ա. կողմը՝ *Պատկերը Թիւ 22ի պէս:*

*Գրութիւնը՝*

IMP. CAES. NER. TRAIANO OPTIMO AVG. GER. DAC. P. M. TR. P. COS. VI. P. P.

[Imperator Caesar Nervae Traiano optimo Augusto Germanico Dacito Pontifico maximo Tribunicia potestate consul sexto, Patri Patriae.]

*Այսինքն՝ ի պատիւ Ներոնի, Տրայանոսի, ինքնակալի Կեսարի, Ամենաբարւոյ, Աւգոստոսափառի, (Յաղթողի) Գերմանաց եւ Դակաց, բարձրագոյն Քրմապետի, Տրիբունի, Զ. անգամ Հիւպատի, Հօր Հայրենեաց:*

Բ. կողմը՝ *Թիւ 22ի պէս:*

*Վիեննայի Պետական Թանգարան:*

23-1. *Տարբերակ.*

Բ. կողմը *կը ցուցնէ հինգ զինուորներ.* — Wigan *հաւաքածոյ*, 1872:

*Այս դրամը կոխուած է* 115—116 *թուականին:*

*Պարթամասիրիսի սպանութենէն յետոյ, Տրայանոս հարաւ քալեց եւ Անտիոքի մէջ ձմեռեց: Ճամբան՝ Մծբինը գրաւեց Պարթեւներէն եւ այս յաղթութեան համար ստացաւ* Parthicus *տիտղոսը, որ կը տեսնուի իր բազմաթիւ դրամներուն վրայ:*

*Յաջորդ տարին Տրայանոս յաջողեցաւ գրաւել Տիզբոն եւ Պարթեւ թագաւորը Խոս-*

րով՝ հագիւ կրցաւ ազատիլ եւ փախչիլ Պարսկաստանի խորերը։ Այսպէս՝ Միջագետքն ալ դարձաւ հռոմէական նահանգ։ Ի յիշատակ այս յաղթանակներուն, Տրայանոս կոխեց պղինձէ խոշոր դրամ մը, որուն վրայ կը յիշատակուի Հայաստանի անունը։

**24.** ա, բ· *Պղինձ սեստերս* [RIC-642, BMC-1033, C-39.]

Ա· կողմը՝ *Տրայանոսի կիսանդրին աջ դարձած եւ դափնեպսակ։ Գրութիւնը՝*

IMP. CAES. NER. TRAIANO OPTIMO AVG. GER. DAC. PARTHICO P. M. TR. P. COS. VI. P. P.

[Imperator Caesar Nervae Traiano Optimo Augusto Germanico Dacito Parthico Pontifico Maximo Tribunicia potestate Consuli sexto, Patri Patriae.]

*Այսինքն՝ Ի պատիւ Ներոնի, Տրայանոսի, Ինքնակալի, Կեսարի, Ամենաբարւոյ, Աւգոստոսափառի, (Յաղթողի) Գերմանաց, Դակաց, եւ Պարթեւաց, բարձրագոյն Քրմապետի, Տրիբունի, Զ· անգամ Հիւպատի, Հօր Հայրենեաց։*

Բ· կողմը՝ *Դափնեպսակ, Տրայանոսը կանգնած հանդիպահայեաց, գլուխը աջ, զինուորական զգեստով, նիզակ մը աջ ձեռքին, եւ սուրի պատեանը ձախ ձեռքին։ Աջին ու ձախին կը տեսնուին Տիգրիսի եւ Եփրատի չաստուածները կողմնահակեալ սափորի վրայ եւ ձեռքերուն մէջ եղէգ մը, կը նային իրա–*

րու։ Երկուքին մէջտեղը տաւեւոր Հայաստան, նստած գէպի ձախ, գլուխը յենած աջ ձեռքին, իսկ ձախ ձեռքը կը հանգչի գետին։ Գլուխը հայկական գդակ։ Գրութիւնը շուրջանակի՝

ARMENIA ET MESOPOTAMIA IN POTESTAM, P. R. REDACTAE — S. C.

[Armenia et Mesopotamia in potestam Populi Romani redactae — S. C.]

Այսինքն՝ Հայաստան եւ Միջագետք Հռոմէական ժողովուրդին իշխանութեան ներքեւ. ծերակոյտի վճռով։

Կշիռ՝ 27·3 կրամ։ Պաուկեան Հաւաքածոյ։



24

Տարբերակներ.

24–1. բ. Նոյնը, բայց Տրայանոսի մարմինը աջ դարձած է [BMC-1035], իսկ Հայաստանի գլուխը աջ դարձուցած է։

Կշիռ՝ 27·8 կրամ։ Պաուկեան Հաւաքածոյ։

24–2. բ. Հայաստանի գլուխը ձախ կը նայի, (BMC-1039) եւ յենած է ձեռքին վրայ։

Կան նաեւ տարբերակներ, ուր բառերու գրութիւններն իրարմէ զատուած են. այսպէս՝ POTES TATEM, P OTESTATEM, PO TE STATEM IN POTESTATEM, PO TESTATEM, MESOPOTA MIA, եւն:

Տրայանոսի վերջի տարիներուն, Հռոմէական կայսրութիւնը հասաւ իր ընդարձակութեան գագաթնակէտին եւ կը տարածուէր Հայաստանէն մինչեւ Ատլանտեան ովկիանոս: Միջերկրական ծովը խակապէս դարձած էր հռոմէական լիճ մը: Տրայանոս մեռաւ 117 Օգոստոսին, Կիլիկիոյ մէջ:

Տրայանոս հատանեց նաեւ քանի մը ոսկի եւ պղինձ դրամներ, որոնց Բ. կողմին վրայ կը տեսնենք զինքը, նստած բեմի վրայ, զինուորական հագուստով, աջ ձեռքը երկարած եւ ձախը յենած սուրի պատեանին — parazonium —: Երկու սպաներ քովը կանգնած, աջ կողմինը նիզակով: Գետնի վրայ կը տեսնուին կանգնած երեք թագաւորներ. արեւելեան երկար հագուստներով եւ թոյլ անդրավարտիկով: Երեքն ալ կը նային Տրայանոսին, ամենամօտիկը աջ ձեռքը երկարելով Տրայանոսի դափնեպսակը ստանալու համար:

Ոսկի դրամին Ա. կողմը գրուած է՝

[RIC-366, 367, BMC-588, 613, C-330, 333]

IMP. CAES. NER. TRAIANO OPTIMO AVG. GER. DAC.

եւ ոմանք PARTHICO աւելցուած:

*Իսկ Բ․ կողմը՝* REGNA ADSIGNATA

*Իսկ պղինձ մեծ դրամներուն վրայ գրուած է՝*

[RIC-666, BMC-1043, C-328]

Ա․ կողմը՝ IMP. CAES. NER. TRAIANO OPTOMO AVG. GER. DAC. PARTHICO P. M. TR. P. COS. VI. P. P.

*Իսկ Բ․ կողմը՝* REGNA ADSIGNATA — S. C.

*Այսինքն՝ Թագաւորութեանց բաժանումը, ծերակոյտի վճռով։*

*Դրամավաճառները չատ անգամ այս դրամները կը ներկայացնեն իբր Հայաստանի վերաբերեալ հռոմէական դրամներ, ըսելով թէ երեք թագաւորներէն մէկը Հայաստանի թագաւորն է։ Նոյն իսկ* Mattingly *եւ* Sydenham [1] *կը գրեն թէ Տրայանոս նստած բեմի վրայ կ՚ընդունի երեք թագաւորներու հպատակութիւնը, հաւանաբար՝ Հայաստանի, Միջագետքի եւ Պարթեւստանի թագաւորներունը։ Սակայն* Mattingly [2] *իր աւելի նոր հրատարակութեան մէջ կ՚ըսէ միայն «երեք թագաւորներ, որոնք կը ներկայանան իր առջեւ իրենց թագաւորական չնորհումը ստանալու համար»։ Հայաստանի թագաւորի մասին խօսք չկայ, եւ ոչ ալ Հայաստանի կամ*

---

[1] H. Mattingly and E. A. Sydenham, Roman Imperial Coinage, Vol. II, p. 240 (1926).

[2] H. Mattingly, Coins of the Roman Empire, Vol. III, p. lxxxv (1966).

ուրիշ երկրի անուն կը յիշուի, այս դրամներու մասին տանձնին խօսած տեն [3]:

Այս խնդիրը կը լուսաբանուի յստակօրէն, երբ պատմական դէպքերը նկատի ունենանք [4]: Երբ Տրայանոս 114ին Հայաստանի մօտեցաւ, տեղական փոքր արքայիկները կանչեց եւ գանոնք հաստատեց իրենց գահերուն վրայ: Ահա այս դէպքն է, որ կը նշանակուի REGNA ADSIGNATA դրամներու վրայ:

Երբ Հայաստանի վրայ քալեց, Պարթամասիրիս եկաւ հռոմէական բանակատեղին՝ յուսալով Տրայանոսէն ընդունիլ իր թագը: Այս դէպքը կը տեսնենք մեր թիւ 22 եւ 23 դրամներուն վրայ: Հոս ծնրադիր Պարթամասիրիսը, թագաւորական գաւինի չի ստանար Տրայանոսէն. եւ յիրաւի՝ ինչպէս տեսանք՝ ան սպանուեցաւ: Այսպէս Հայոց թագաւորը թագ չստացաւ, եւ ոչ ալ Պարթեւ թագաւորը գնաց Տրայանոսի քով, ուրիշ թագաւորներու հետ թագ ստանալու համար:

Հայաստան եւ Միջագետք վերածուեցան հռոմէական պարզ նահանգներու եւ այս դէպքը կը յիշատակուի թիւ 24 դրամով:

Ուրեմն, լուսաբանելով պատմական դէպքերը, կը տեսնենք որ այս ոսկի եւ պղինձ

[3] Ibid. pp. 115, 120, 222.

[4] R. P. Langden, The Cambridge Ancient History, Vol. XI, pp. 240—245 (1965).

դրամները կարելի չէ նկատել իբրեւ Հայաստանի վերաբերեալ Հռոմէական դրամներ։

Այս դրամներէն զատ, Cohen[5] կը յիշատակէ արծաթ դրամ մը, որ կը կարծէ թէ կոխուած է Հայաստանի մէջ 102ին։ Այս դրամին երկրորդ կողմին վրայ ըստ Cohenի Հայաստան աջ կանգնած է, եւ բռնած վահան մը եւ նիզակ մը։ Գրութիւնը՝

Ա. կողմը՝ IMP. TRAI... GER. DAC. M. P.

Բ. կողմը՝ P. M. TR. P. VI. AVG. IMP.

Թէեւ այս դրամը յիշատակուած է դրականութեան մէջ, սակայն անոր գոյութիւնը շատ կասկածելի է, եւ հաւանաբար Cohen կը սխալի դրամը Հայաստանի վերագրելով։

Հռոմէացիք դրամներ կոխեցին ոչ միայն Հռոմի եւ եւրոպական զանազան փողերանոցներու մէջ, այլ նաեւ՝ ինչպէս տեսանք՝ Արեւելքի մէջ, իրենց բանակներուն վճարելու համար։ Ասկէ զատ, Արեւելքի մէջ հաստատուած յունական փողերանոցները կոխեցին հռոմէական դրամներ յունական գրերով։ Այս դրամները ճանչցուած են իբր յունական կայսերական դրամներ։

Շատ հետաքրքրական է որ այս դրամներու վրայ երբեմն կը հանդիպինք Հայաս-

---

5 H. Cohen, Medailles Imperiales, Descriptions Historique de Monnaies frappées sous l'Empire Romain, Vol. II, p. 47, No. 285 (1882).

տանի անունին. Տրայանոսի Կրէտէ կղզիին մէջ կոխած դրամներու քանի մը հատին վրայ կը տեսնենք ARMENIA անունը: — Թիւ 25, 26, 27:

**25.** ա, բ. Պղինձ [6], [7].

Ա. կողմը՝ Տրայանոսի կիսանդրին ձախ դարձած, դափնեպսակ եւ զրահապատ:

Գրութիւնը՝

AVTOKPATΩP AVΓ TPAIANOC ΓΕΡ ΔΑΚΙ (AVTOKPATΩP AYΓΟΥΣΤΟC TPAIANOC ΓΕΡΜΑΝΙΚΟC ΔΑΚΙΚΟC)

Այսինքն՝ Օգոստափառ կայսեր Տրայանոսի, Յաղթող Գերմանացւոց եւ Դակաց:

Բ. կողմը՝ Կայսրը կանգնած ձախ, զինուորական հագուստով, աջ ձեռքը բռնած սաղաւարտ մը եւ ձախով նիզակ մը: Քովը վահան մը եւ երկու նիզակներ: Կայսեր ետեւ կանգնած է Յաղթանակը, որ աջ ձեռքով կը պսակէ զայն: Յաղթանակին ետեւ աղեղ եւ կապարճ: Կայսեր առջեւ նստած է Հայ գերին:

Գրամին վարի մասին վրայ դրուած է՝ ARMENIA

---

[6] British Museum Catalogue of Greek Coins, Galatia, Cappadocia and Syria, p. 102, Pl. XIV, No. 5 (1964).

[7] J. N. Svoronos, Numismatique de la Crète Ancienne, pp. 347, 349 (1890): Mionnet, Suppl. IV, p. 349, No. 330.

*Լոնտոնի Բրիտ. Թանգ. կշիռ մօտ 24 կրամ: Այս պղինձէն օրինակ մը կը գտնուի նաեւ Վիեննայի Պետական Թանգարանին մէջ:*




25

**26.** բ. *Փոքր պղինձ* [7].

Ա. կողմը՝ *Գրութիւնը եւ պատկերը Թիւ 25ի պէս:*

Բ. կողմը՝ *Կայսրը կանգնած աջ կողմը, դէպի ձախ, զինուորական հագուստով, աջ ձեռքին՝ Յաղթանակը, իսկ ձախը կը կռթնի վահանի վրայ: Հայաստան նստած, ձախ կողմը կան զինուորական զրահներ: Գրութիւնը՝* ΑΡΜΕΝΙΑ

*Վիեննայի Պետական Թանգարան:*

**27.** ա, բ. *Միջակ պղինձ* [7].

Ա. կողմը՝ *Թիւ 25ի պէս, բայց գրութիւնը համառօտուած.*

ΑVΤ. ΑVΓ ΤΡΑΙΑΝΟϹ ΓΕΡ. ΔΑΚΙ

Բ. կողմը՝ *Թիւ 26ի պէս եւ նոյն գրութեամբ՝* ΑΡΜΕΝΙΑ

*Կչիռ՝ ... կրամ ։ Վիեննայի Ազգային Թանգարան ։*



27

28. ա, բ · *Մեծ պղինձ*[8] .

*Տրայանոսի գլուխը աջ դարձած, եւ դափնեպսակ ։ Գրութիւնը՝*

ΑVΤ ΚΑΙΣΑΡ ΝΕΡ ΤΡΑΙΑΝΟΣ ΑΡΙΣΤΟ ΣΕΒ. ΓΕ ΔΑ

[ΑVΤΟΚΡΑΤΩΡ ΚΑΙΣΑΡ ΝΕΡΟΥΑΣ ΤΡΑΙΑΝΟΣ ΑΡΙΣΤΟΣ ΣΕΒΑΣΤΟΣ ΓΕΡΜΑΝΙΚΟC ΔΑΚΙΚΟC]

*Այսինքն՝ Ինքնակալ ամենաբարւոյ Աւգոստափառ Կեսարի Տրայանոսի, Որդի Ներվայի, Յաղթող Գերմանացւոց եւ Դակաց ։*

Բ · կողմը՝ *Շուրջանակի մէջ՝*

ΣΕΒΑΣΤ | ΟΥ | ΝΕΙΚΗ

*եւ վարի մասին մէջ* ΑΡΜΕ. *այսինքն՝* ΑΡΜΕΝΙΑ

---

[8] H. S .Schultz, Forschungen und Berichte Staatliche Museen zu Berlin, 10, p. 214, pl 34, No. 2 (1968).

*Յաղթանակը ձախ ձեռքով բռնած է արմաւենիի ճիւղ մը, որ ձախ կ՚երկարէ, աջ ձեռքը կը յենու զինուորական յաղթութեան զինանշաններու վրայ ։*

*Կշիռ՝* 23·19 *կրամ ։ Բերլինի Թանգարան ։*

*Այս դրամէն ուրիշ օրինակ մը կը գտնուի Ամերիկեան դրամագիտական ընկերութեան Թանգարանին մէջ։ Կը կարծուի թէ այս դրամը կոխուած է Բիւթանիոյ մէջ*[8] ։



28

**29.** ա, բ· *Մեծ պղինձ*[9].

Ա· կողմը՝ *Տրայանոսի գլուխը դափնեպսակ եւ աջ դարձած ։ Գրութիւնը թիւ* 28*ի համառօտութեամբ*

ΑΥΓ. ΚΑΙΣ ΝΕΡ ΤΡΑΙΑΝΟC ΣΕΒ ΓΕΡΜ
[ΑΥΤΟΚΡΑΤΩΡ ΚΑΙΣΑΡ ΝΕΡΟΥΑΣ ΤΡΑΙΑΝΟΣ ΣΕΒΑΣΤΟΣ ΓΕΡΜΑΝΙΚΟΣ]

---

[9] Sammlung von Aulock, Sylloge Nummorum Graecorum, Deutschland, Part 1—3, No. 145, 146 (1957).

Բ. կողմը՝

*Գրութիւնը՝* ΚΟΙΝΟΝ ΑΡΜΕΝΙΑΣ ΕΤΟΥΣ

*Այսինքն՝ Հայաստանի կուսակալ եւ թուականը* ΜΓ = 43, (*այսինքն՝ Քրիստոսէ վերջ* 114—115 *թուականին*) :

*Կշիռը՝* 21·65 *կրամ* : Von Aulock *հաւաքածոյ* : *Շատ հաւանական է որ թէ՛ այս դրամը եւ թէ՛ յաջորդը կոխուած են Աղեքսանդրիոյ մէջ*[10] :



29

30. Բ. *Փոքր պղինձ* (10).

Ա. կողմը՝ *Թիւ 29ի պէս* :

Բ. կողմը՝ *Նոյնպէս Թիւ 29ի պէս* :

*Կշիռ՝* 13·51 *կրամ* : Von Aulock *հաւաքածոյ* :

31. Բ. *Մեծ պղինձ*[9].

Ա. կողմը՝ *Տրայանոսի գլուխը աջ դարձած ճառագայթաւոր դափնեպսակով* :

---

[10] J. Vogt. Die alexandrischen Münzen, Stuttgart, p. 91, Pl. I. No. 145, 146 (1924).

*Գրութիւնը՝* AVT ΤΡΑΙΑΝΟΣ ΓΕΡΜ. ΔΑΚΙΚ

Բ. կողմը՝ *Յաղթանակը ձախ կը քալէ։ Ձախ ձեռքով բռնած է արմաւենիի ճիւղ մը, որ կ'երկարի ուղղահայեաց դէպի աջ։ Աջ ձեռքը կ'երկարի դէպի զինանշաններ, որ կը տեսնուին գաշտին ձախ կողմը։ Ձախ կողմը կը տեսնուի կանգնած անձ մը հայկական գդակով (°)։ Յաղթանակին առջեւ եւ ձախ կողմը կը տեսնուի անձ մը (Հայաստան), ծունկի եկած եւ կը կրէ հայկական խոյր։ Դաշտին մէջ կը տեսնուի* L I Z *գրերը։*

*Այս դրամը կոխուած է* 113—114*ին։ Բեռլինի Թանգարան։*

*Թէեւ այս պղինձին վրայ* ΑΡΜΕΝΙΑ *գրութիւն չկայ, կը կարծուի թէ ծունկի եկած անձը Հայաստանը ներկայացնէ։*

32. **բ**. *Մեծ պղինձ*[9].

Ա. կողմը՝ *Տրայանոսի գլուխը դափնեպսակ եւ աջ դարձած։ Գրութիւնը թիւ 31ի պէս։*

Բ. կողմը՝ *Տրայանոս նստած ձախ՝ աթոռի մը վրայ, ձախ ձեռքով բռնելով երկար, ուղղահայեաց նիզակ մը։ Աջ ձեռքը կ'երկարի աջ կողմը ծունկի եկած անձի մը (Հայաստան), որ հայկական խոյր կը կրէ։ Դաշտին ձախ կողմը կը տեսնուի զինուորական նշաններ։ Դաշտին մէջ աջ եւ ձախ կողմը կը տեսնուին* L I Z *գրերը։*

33. Պղինձ (11)․

Ա․ կողմը՝ Տրայանոսի գլուխը աջ դարձած։

ΑVΤ ΝΕΡΕΟΥΑΣ ΤΡΑΙΑΝΟΣ ΚΑΙΣΑΡ ΣΕ ΓΕΡ

Բ․ կողմը՝ ΑΡΜΕΝΙΑ կին մը ծունկի եկած, աջ ձեռքով բռնած պատերազմական զինանշան մը, եւ ձախով թագ մը որ կը ներկայացնէ կայսեր։ Այս դրամը յիշատակուած է Mionnetի[11] կողմէ եւ առնուած Vaillantի գրքէն[12]․ իսկապէս ուր ըլլալը եւ ինչ ըլլալը վստահօրէն չի գիտցուիր։

11 Mionnet, Vol. VI, p. 697, No. 563.

12 J. Vaillant, Numismata graeca.

## ԳԼՈՒԽ Զ.

## ԱՆՏՈՆԻՆՈՍ ՊԻՈՍԻ ԴՐԱՄՆԵՐԸ

(138—161)

Տրայանոսի յաջորդեց Ադրիանոս, որ արդէն Արեւելքի պատերազմներուն մասնակցած էր՝ իբր բանակի զօրավար։ Այսպէսով ան ծանօթ էր Հայաստանի կնճռոտ խնդրին։ Երբ Տրայանոս յանկարծամահ եղաւ, Սուրիոյ հռոմէական բանակը կայսր հռչակեց Ադրիանոսը։

Ադրիանոս խոհեմական նկատեց, Հայաստանի վրայ դնել իր նախկին թագաւոր Վաղարշ Ա.ը, քան թէ մշտական կռիւներով երկիրը պահել նուաճողի վիճակի մէջ։ Նոյնպէս՝ հպատակ թագաւորութիւններ հաստատեց Միջագետքի եւ Եդեսիոյ մէջ։ Վաղարշ թագաւորեց մօտ 25 տարի 117—140։

Զարմանալի է որ Ադրիանոս՝ Հայաստանի հանդէպ իր ընթացքը յիշատակող որեւէ դրամ կոխած չէ։ Թերեւս Հռոմի համար Հայաստանի կորուստը հաճելի դէպք մը չէր եւ յարմար չէր զայն յիշատակել դրամներու վրայ։

Ադրիանոսի յաջորդեց իր հոգեզաւակը՝ Անտոնինոս Պիոսը 138ին։ Կայսրութիւնը ընդարձակ եւ զօրաւոր էր. կը մնար չարու—

*նակել խաղաղութիւնը։ Պարթեւաստանի Վաղարշ Բ.ը, ներքին խռովութիւններու պատճառաւ, վտանգ մը չէր ներկայացնէր Հռոմի. եւ Արեւելքի միւս փոքր թագաւորութիւնները դոհացան մնալով՝ հպատակ դաշնակից երկիրներ։*

*Անտոնինոս Պիոսի* 140—144 *կոխուած պղինձի սեստերսի մը վրայ կը կարդանք* Rex Armeniis Datus, S. C. *այսինքն՝ Հայերուն թագաւոր տրուեցաւ — ծերակոյտին հրամանով։ Տարակոյս չկայ որ այս դէպքը Սոյեմոսի թագաւորութիւնը կ՚ակնարկէ։ Կ՚երեւի այս տեններ Հայոց Վաղարշ թագաւորը վախճանելով, Անտոնինոս Պիոս, Սոյեմոսը Հայոց թագաւոր կարգեց։ Այս վերջինը հաւանաբար Արշակունիներու սերունդէն էր. բայց պատմական փաստերը կը ցուցնեն թէ ան ո՛չ միայն հռոմէական հպատակ էր, այլ նաեւ Հռոմի ծերակուտի անդամ։*

*Այս շատ հետաքրքրական եւ հազուագիւտ դրամին վրայ կը տեսնենք.*

34. ա, բ. BMC-1272, RIC-619, C-686

Ա. կողմը՝ *Անտոնինոս Պիոսի գլուխը աջ դարձած եւ դափնեպսակ. Գրութիւնը՝* ANTONINVS AVG. PIVS, P. P. TR. P. COS. III

[Antoninus Augustus Pius, Pater Patriae, Tribunicia Potestate Consul III.]

*Այսինքն՝ Անտոնինոս Օգոստոս Պիոս,*

*Հայր Հայրենեաց, Տրիբունեան իշխանու-թեան տէր, Գ. անգամ Հիւպատ։*

Բ. կողմը՝ *Անտոնինոս Պիոս ձախ կանգ-նած, խոյր կը դնէ Հայաստանի թագաւորին գլխուն, որ ձախ կողմը կանգնած է եւ բռնած է գալարուած մագաղաթ մը։*

REX ARMENIIS DATUS — S. C. / Rex Armeniis datus. Senatus consulto.



34

*Այսինքն՝ Հայերուն թագաւոր տրուե-ցաւ, ծերակոյտի վճռով։*

*Կշիռ՝* 25·6 *կրամ։ Պաուկեան հաւա-քածոյ։*

*Սոյեմոսի Հայաստանի թագաւորելը, անշուշտ հաճելի չէր Պարթեւստանի թա-գաւոր Վաղարշ Բ.ին. որովհետեւ ան՝ Պար-թեւ Արշակունի տոհմին չէր պատկաներ։ Սակայն Վաղարշ զբաղուած էր ներքին խռո-վութիւններով, եւ Անտոնինոս Պիոս կրցաւ դիւանագիտական միջոցներով խաղաղու-թիւնը պահպանել։*

Նոյնպէս երբ 154ին Պարթեւաստանի նոր թագաւոր Վաղարշ Գ.՝ կը պատրաստուէր Հայաստանի վրայ քալել Սոյեմոսը գահընկեց ընելու համար, Անտոնինոս Պիոս դնաց եւ անձնական տեսակցութիւն մը ունեցաւ պարթեւ թագաւորին հետ Եփրատի մօտ եւ համաձայնութեան եկաւ, որ Վաղարշ Գ. Հայաստանի գործերուն չմիջամտէ:

34 a – BMC էջ 188, — Strack թիւ 777 ·

Ա · կողմը՝ Անտոնինոս Պիոսի գլուխը աջ դարձած եւ դափնեպսակ: Գրութիւնը՝

ANTONINVS AVG. PIVS P. P.

Բ · կողմը՝ Հայաստան ձախ կանգնած, բռնած է դափնի մը եւ զինանշաններ: Գրութիւնը՝

ARMENIA COS. II. S. C.

Այս շատ մաշած սեստերսը յիշատակուած է Strackի գրքին մէջ՝ P. L. Strack, Untersuchungen zur Römischen Reichsprägung des zweiten Jahrhunderts, հատոր Գ, էջ 245, թիւ 777, Տիպ · 30:

# ԳԼՈՒԽ Է.

# ՄԱՐԿՈՍ ԱՒՐԵՂԻՈՍԻ (161—180) ԵՒ ՂՈՒԿԻՈՍ ՎԵՐՈՍԻ (161—169) ԴՐԱՄՆԵՐԸ

*Հռոմի Կայսրերու յաջորդութիւնը ապահովելու համար, իշխող կայսրերն իրենց գահակից կը հռչակէին անձեր, որոնք ազգականական եւ կամ քաղաքական զօրաւոր կապեր ունէին իրենց հետ։*

*Այսպէս. 138ին՝ Անտոնինոս Պիոս իր որդեգրած Մարկոս Աւրեղիոսը կեսար հռչակեց, եւ աւելի ուշ զայն ամուսնացուց իր աղջկան Փաւստինայի հետ։ Մարկոս Աւրեղիոս արդէն շատ կանուխէն ընտրուած էր Ադրիանոսի կողմէ եւ մանաւոր կրթութիւն ստացած իբր կարող անձ մը, որ պատրաստուի օր մը պետութեան ղեկը ձեռքն առնելու։ Նոյն տարին Պիոս որդեգրեց Ղուկիոս Վերոսը, առանց սակայն անոր տալու Կեսար տիտղոսը։ Այդ տիտղոսն անոր տրուեցաւ միայն, երբ Աւրեղիոս՝ Աւգոստոս հռչակուեցաւ։ Կը տեսնուի ուրեմն որ Աւրեղիոս տեսակ մը երէց էր եւ առաջնութիւն ունէր. թէեւ երբ Պիոս մեռաւ եւ Աւրեղիոս անոր յաջորդեց, ան անմիջապէս Վերոսին տուաւ Աւգոստոս տիտղոսը եւ զինքն իրեն գահակից հռչակեց։*

Այսպէս՝ Տրայանոս, Ադրիանոս, Պիոս եւ Աւրեղիոս՝ կայսրութիւնը շարունակեցին յաջողապէս, կարգելով իրենց յաջորդ՝ ընտրուած ու պատրաստուած կարող անձեր: Անոնց իշխանութեան շրջանին՝ մօտ հարիւր տարի, Հռոմ իր մեծութեան գագաթնակէտին հասաւ:

Երբ Վերոս մեռաւ 169ին, Աւրեղիոս իր երկու որդիները կեսար հռչակեց: Իսկ երբ 180ին Աւրեղիոս մեռաւ, անոր որդին Կոմոդոս իշխանութեան ղեկը ձեռք անցուց առանց դժուարութեան:

Աւրեղիոս շուտով սորվուեցաւ դիմագրաւել կայսրութեան սպառնացող վտանգներու: Պարթեւաց Վաղարշակ Գ. Թագաւորը Հռոմի դէմ պատերազմ հռչակեց եւ Հայաստան գրկեց բանակով մը իր կարող զօրավարը Ոսրով, որ արշակունի Բակուրը Հայոց գահը բարձրացուց:

Արեւելքի երկարատեւ խաղաղութիւնը՝ անշարժութեան դատապարտած էր հռոմէական բանակները, եւ այս պատճառաւ գինուորները մեղկացած էին եւ կորսնցուցած իրենց կարգապահութիւնը: Պարթեւներն առանց մեծ դժուարութեան ջախջախեցին այդ թուլցած բանակներն ու մտան Սուրիա:

Աւրեղիոս ըմբռնեց կացութեան լրջութիւնը. Արեւելք ղրկեց Վերոսը՝ տալով անոր Հռենոսի, Դանուբի եւ Եգիպտոսի լէգէոնները:

Վերոս մեկնեցաւ 162ին եւ Անտիոք հասաւ 163ի գարնան. լէգէոնները համախմբուած ու կազմակերպուած էին, իսկ Պարթեւները քաշուած Սուրիայէն: Հայաստան սակայն կը մնար Պարթեւներու կուսակից Բակուրի իշխանութեան ներքեւ:

163ի ամառը, հռոմէական լէգէոնները՝ Ստատիոս Պրիսկոսի առաջնորդութեամբ մտան Հայաստան ու գրաւեցին Արտաշատը եւ հիմնովին կործանեցին: Նոր քաղաք մը շինուեցաւ Արտաշատէն երեսուն մղոն հեռու եւ հոն դրուեցաւ հռոմէական պահակազօրը:

Ղուկիոս Վերոս անմիջապէս առաւ ARMENIACUS — Հայաստանի Յաղթող — տիտղոսը, ինչպէս կը տեսնենք իր բազմաթիւ դրամներուն վրայ. իսկ Աւրելիոս սպասեց տարի մը, մինչեւ որ խաղաղութիւնը հաստատուեցաւ, եւ ինքն ալ նոյն տիտղոսն առաւ դրամներու վրայ: Յաջորդ հինգ տարիներուն, երկու կայսերն ալ, իրենց հարիւրաւոր դրամներուն վրայ գործածեցին այդ տիտղոսը: Թէեւ այս դրամներն, հռոմէական կայսերերուն յաջողութիւնները կը մատնանշեն, սակայն պէտք է նկատի առնել նաեւ, որ Միջագգային քաղաքակիրթ ազգերու պատմութեան մէջ, Հայաստանն ալ իր կարեւոր տեղը գրաւեց Բրիտանիոյ, Գաղղիոյ, Գերմանիոյ եւ Պարթեւաստանի կողքին:

Հռոմէական զօրավար Մարտիոս Վերոս (Martius Verus) Հայաստանը խաղաղեցուց

*եւ նորէն Սոյեմոսը թագաւոր կարգեց : Այս— պէս Հռոմէացիք հետեւեցան Տրայանոսի հին քաղաքականութեան եւ Հայաստանը վերա— ծեցին դաշնակից—հպատակ թագաւորութեան մը, եւ ոչ թէ հռոմէական պարզ նա— հանգի մը :*

ԼՈՒԿԻՈՍ ՎԵՐՈՍԻ ԵՒ ՄԱՐԿՈՍ ԱՒՐԵԼԻՈՍԻ ԴՐԱՄ— ՆԵՐՈՒ ՎՐԱՅԻ ԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ

*Քանի որ Ղուկիոս Վերոս առաջինն եղաւ որ* ARMENIACUS *տիտղոսով դրամ կոխեց տանք նախ անոր՝ Հայաստանի վերաբերեալ դրամներու ցանկը, եւ ապա Մարկոս Աւրե— լիոսինը :*

*Այս դրամներուն առաջին կողմին վրայ կը տեսնուի կայսեր գլուխը՝ իր անունով եւ տիտղոսով, չորս տարբերակներով·*

*Ա·* L. VERVS AVG. ARMENIACVS

Lucius Verus Augustus Armeniacus

*Այսինքն՝ Ղուկիոս Վերոս Աւգոստոս, Հայաստանի Յաղթող*

*Բ·* L. AVREL. VERVS ARMENIACVS

Lucius Aurelius Verus Armeniacus

*Այսինքն՝ Ղուկիոս Աւրելիոս Վերոս, Հայաստանի Յաղթող*

*Գ·* L. AVREL. VERVS AVG. ARME- NIACVS

Lucius Aurelius Verus Augustus Ar- meniacus

Այսինքն՝ Ղուկիոս Աւրելիոս Վերոս Աւգոստոս, Հայաստանի Յաղթող

Դ. L. VERVS AVG. ARM. PARTH. MAX.

Lucius Verus Augustus Armeniacus Parthicus Maximus

Այսինքն՝ Ղուկիոս Վերոս Աւգոստոս, Հայաստանի եւ Պարթեւաստանի Յաղթող, Վսեմափայլ։

Իսկ Մարկոս Աւրելիոսի դրամներուն առաջին կողմին վրայ կը տեսնենք հետեւեալ տիտղոսները, եօթը տարբերակներով․

Ա. ANTONINVS AVG. ARMENIACVS

Antoninus Augustus Armeniacus

Այսինքն՝ Անտոնինոս Աւգոստոս, Հայաստանի Յաղթող

Բ. M. ANTONINVS AVG. ARMENIACVS

Marcus Antoninus Augustus Armeniacus

Այսինքն՝ Մարկոս Անտոնինոս Աւգոստոս, Հայաստանի Յաղթող

Գ. M. ANTONINVS AVG. ARMENIACVS P. M.

Marcus Antoninus Augustus Armeniacus Pontifex Maximus

Այսինքն՝ Մարկոս Անտոնինոս Աւգոստոս, Հայաստանի Յաղթող, Մեծ Քրմապետ

Դ· M. AVREL. ANTONINVS AVG. ARMENIACVS P. M.

Marcus Aurelius Antoninus Augustus Armeniacus Pontifex Maximus

*Այսինքն՝ Մարկոս Աւրելիոս Անտոնինոս Աւգոստոս, Հայաստանի Յաղթող, Մեծ Քրմապետ*

Ե· M. ANTONINVS AVG. ARMEN. P. M.

Marcus Antoninus Augustus Armeniacus, Pontifex Maximus

*Այսինքն՝ Մարկոս Անտոնինոս Աւգոս-տոս Հայաստանի Յաղթող Մեծ Քրմապետ*

Զ· M. AVREL. ANTONINVS AVG. ARM. PARTH. MAX

Marcus Antoninus Augustus Armeniacus Parthicus Maximus

*Այսինքն՝ Մարկոս Անտոնինոս Աւգոս-տոս, Հայաստանի եւ Պարթեւաստանի Յաղ-թող, Վսեմափայլ*

Է· M. AVREL. ANTONINVS AVG. ARM. PARTH. MAX.

Marcus Aurelius Antoninus Augustus Armeniacus Parthicus Maximus

*Այսինքն՝ Մարկոս Աւրելիոս Անտոնինոս Աւգոստոս Հայաստանի եւ Պարթեւաստանի Յաղթող, Վսեմափայլ*

*Կը տեսնենք նաեւ որ Ղուկիոս Վերոսի դրամներուն ա· կողմի վրայ տեսնուած գլուխը կը ցուցնէ 18 տարբերակներ·*

1։ Ղուկիոս Վերոսի գլուխը աջ դարձած։

2։ Կիսանդրին աջ ու ձախ ուսը ասուեւոր։

3։ Կիսանդրին ասուեւոր եւ գլուխը աջ։

4։ Կիսանդրին զրահապատ եւ գլուխը աջ։

5։ Կիսանդրին ասուեւոր եւ զրահապատ եւ գլուխը աջ։

6։ Ղուկիոս Վերոսի գլուխը դափնե-պսակ եւ աջ դարձած։

7։ Կիսանդրին աջ, դափնեպսակ եւ ձախ ուսը ասուեւոր։

8։ Կիսանդրին աջ, դափնեպսակ եւ ասուեւոր։։

9։ Կիսանդրին աջ, դափնեպսակ եւ զրահապատ։

10։ Կիսանդրին աջ, դափնեպսակ, ասուեւոր եւ զրահապատ։

11։ Ղուկիոս Վերոսի գլուխը ձախ դարձած։

12։ Կիսանդրին ասուեւոր եւ գլուխը ձախ։

13։ Կիսանդրին ասուեւոր, զրահապատ եւ գլուխ ձախ։

14։ Ղուկիոս Վերոսի գլուխը ճառա-գայթաւոր եւ աջ դարձած։

15։ Կիսանդրին աջ, գլուխը ճառագայ-թաւոր եւ ձախ ուսը ասուեւոր։

16։ Կիսանդրին աջ, ասուեւոր եւ ճառա-գայթաւոր։

17. *Կիսանդրին աջ, ճառագայթաւոր եւ զրահապատ.*

18. *Կիսանդրին աջ, ճառագայթաւոր, զրահապատ եւ ասուեւոր.*

*Ուշադիր ըլլալու է, որ Ղուկիոս Վերոս ունի նաեւ ութ ուրիշ տարբերակներ, իսկ Աւրելիոսը՝* 15 *ուրիշ տարբերակներ, որոնց վրայ Հայաստանի անունը չի յիշատակուիր: Այս դրամները կոխուած են* 163—169 *տարիներէն առաջ կամ վերջ: Նկատելի է նաեւ որ Հայաստանի վերաբերեալ դրամներուն վրայ կայսեր գլուխ կը տեսնուի բազմաթիւ տարբերութիւններով՝ ըլլայ մերկ, դափնեպսակ, ասուեւոր, զրահապատ, աջ կամ ձախ դարձած են:*

*Երկու կայսերուն դրամներուն երկրորդ կողմի խորագիրը կը ցուցնէ անոնց տարեթիւը: Պատմական դէպքերը յստակօրէն կու տան երկու կայսերուն Տրիբունեան իշխանութիւնը, հիւպատութեան եւ կայսերական կարգը: Այսպէս՝ եթէ կարդանք* TR. P. XXI. IMP. IIII. COS. III, *այս կը նշանակէ՝ Տրիբունեան իշխանութեան* 21*րդ կայսերական* 4*րդ եւ հիւպատութեան* 3*րդ տարին:*

*Գիտենք որ երբ Անտոնինոս Պիոս մեռաւ* 7 *Մարտ* 161*ին, Մարկոս Աւրելիոս իր Տրիբունեան վեցերորդ տարուան մէջ էր, նոր ստացած կայսերական տիտղոսը, եւ հիւպա–*

տակաւ պատուոյ արժանացած երրորդ անդամ. ուրեմն դրամին երկրորդ կողմին վրայ կրնանք տեսնել՝ TR. P. XV. IMP. COS. III. Նոյն ատեն Ղուկիոս Վերոս իր Տրիբունեան ա. տարուան մէջ էր, երբ ստացաւ կայսերական տիտղոսը եւ հիւպատական պատուոյ արժանացած բ. անգամ: Այսպէս դրամին երկրորդ կողմին վրայ կը տեսնենք՝ TR. P. IMP. COS. II: Երկու տարի վերջ, — կայսերական երրորդ տարին 163 — այս դրութիւնը վերածուած է՝ TR. P. III. IMP. II. COS II հաստատելով տարեթիւը:

Տրիբունեան առաջին տարին վերջացաւ Դեկտեմբերին. անկէ վերջ տարին տեւեց Դեկտեմբերէ Դեկտեմբեր: Կայսերական տարիներն սկսան անմիջապէս եւ մէկ թիւ աւելցան ամէն մէկ Դեկտեմբերին: Հիւպատական պատիւը կը տրուէր որոշ ժամանակներու եւ անշուշտ տարեթիւէ անկախ ժամանակներ: Եւ այսպէս կարելի է բոլոր դրամներու ժամանակագրական կարգը ճշդել:

## ՂՈՒԿԻՈՍ ՎԵՐՈՍԻ ԵՒ ՄԱՐԿՈՍ ԱՒՐԵՂԻՈՍԻ ԴՐԱՄՆԵՐՈՒՆ ԴԱՍԱՒՈՐՈՒԹԻՒՆԸ ՀԵՏԵՒԵԱԼ ԷՋԵՐՈՒՆ ՄԷՋ

Որովհետեւ այս երկու կայսրերը հարիւրաւոր դրամներ կոխեցին, որոնց վրայ կը տեսնուի Հայաստանի անունը, ընտրեցինք դասաւորութեան ձեւ մը, որ կարելի դարձնէ

*ընթերցողին իր ուզած դրամը գտնել այս էջերուն մէջ։*

*Նախ դրուած են ոսկի դրամները, յետոյ արծաթները եւ ապա պղինձները, մեծ, միջակ ու փոքր տեսակներով, դատ դատ դասաւորութեամբ։ Ամէն բաժին ներկայացուած է ժամանակագրական կարգով։*

*Այսպէս. եթէ արծաթ դրամ մը ունինք, որուն վրայ գրուած է՝*

Ա. կողմը՝ L. VERVS AVG. ARM. PARTH. MAX

Բ. կողմը՝ TR. P. V. IMP. III. COS. II. *կը գտնենք նոյնը Ղուկիոս Վերոսի արծաթներուն շարքին մէջ,* TR. P. V. *որ կու գայ* TR. P. IV. *վերջ եւ* TR. P. VI*էն առաջ։ Նոյնպէս՝* IMP. III*ը, որ կու գայ* IMP. II.*էն վերջ եւ* IMP. IV*էն առաջ։ Կը տեսնենք որ այս դրամը կը պատկանի Օգոստոս 165—Դեկտեմբեր 165 ժամանակամիջոցին։*

*Ղուկիոս Վերոս կոխած է մեզի ծանօթ երեք արծաթ դրամներ այս դրութեամբ։ Այդ դրամները ներկայացուած են* 108, 109 *եւ* 110 *թիւերով։ Թիւ* 108*ի քով կը տեսնենք* 6 *թիւը. ինչ որ կը նշանակէ դրամին ա. կողմը։ Հոս յիշատակուած* 18 *տարբերակներուն (տես էջ* 96) *վեցերորդն է, որ Ղուկիոս Վերոսի գլուխը դափնեպսակ եւ աջ դարձած է։ — Բաց աստի խուրաքանչիւր դրամի քով նշանակած ենք թէ ո՛րչափ յաճախ կը գտնուի նոյն դրամը. ՀԱ գրերը կը նշանակեն այդ*

դրամին սովորական ըՍալը։ ՍԿ կը նշա-
նակէ թէ դրամը սակաւաթիւ է, ՀՁ հա-
զուադիւտ եւ ՇՀ շատ հազուադիւտ։

Կարեւոր դրամներուն գծագրութիւնն
առնուած է իսկական դրամներու լուսանկա-
րէն, ուստի կը տարբերի պարզ գեղարուես-
տական ներկայացումէ մը։ Իրականին մեծ-
ցուած լուսանկարին վրայի պատկերը եւ
գրութիւնը սեւ մելանով գծուած են, ապա
լուսանկարը քիմիական միջոցներով ջնջուած
եւ սեւ մելանի գծագրութիւնը պղտիկցուած
է դրամին չափին։ Երբեմն դրամի վրայի
մաշած գիրերը ամբողջացուած են, որպէս
զի ընթերցողը կարենայ կարդալ գրութիւնը։

Կը տեսնենք նաեւ BMC-385, RIC-540 եւ
C-273 գրութիւնները։ Առաջինը BMC-385,
կը ցուցնէ թէ այս դրամը յիշատակուած է
The Coins of the Roman Empire in the
British Museum գրքին՝ Ղուկիոս Վերոսի
գլխուն մէջ իբր թիւ 385 դրամը։ Նոյնպէս
RIC-540 կը հաստատէ թէ ասիկա Roman
Imperial Coinage գրքին Ղուկիոս Վերոսի
թիւ 540 դրամն է։ Իսկ C-273 կը նշանակէ
թէ Cohenի Ղուկիոս Վերոսի թիւ 273
դրամն է։

Դրամներու պատկերները ու կշիռները
առնուած են ընդհանրապէս BMC գրքէն։

Դրամներու Բ. կողմի նկարագրութիւնը
տրուած է։

# ՈՍԿԻ ԴՐԱՄՆԵՐ

## 163 ՏԱՐԻՈՅ ՎԵՐՋԸ

L. VERVS AVG. ARMENIACVS — TR. P. III. IMP. II. COS II.

**35** ա, բ· – 5 BMC-233, RIC-504.

*Հայաստան հագած կրկնոց եւ անդրավարտիկ, որ մինչեւ ոլոքը կը հասնի, կռնաձեւ գլխարկով, նստած գետնի վրայ տխուր կերպարանքով· ծնօտը յենած է աջ ձեռքին վրայ եւ արմուկը դրած աջ ծունկին: Ձախ ձեռքը աղեղին եւ կապարճին վրայ: Իր եաեւը՝ երկու յաղթանակի նշաններ:*

*Կշիռ 7·0 կրամ· — Բրիտ· Թանգ·* ՀՍ·



35

**36** - 4 BMC- *էջ* 416, RIC-503.

*Թիւ 35ի պէս:* ՀՍ·

**37** - 1 BMC- *էջ* 416, RIC-502, C-219.

*Թիւ 35ի պէս:* ՀՍ·

**38** ա, բ· – 5 BMC-238, RIC-499.

*Թիւ 35ի պէս, բայց ստորաբաժնին մէջ գրուած* ARMEN:

*Կշիռ 7·2 կրամ: — Բրիտ· Թանգ·* ՍԿ·



38

**39** - 1 BMC- էջ 416, RIC-498, C-4.
Թիւ 38ի պէս, ARMEN գրութեամբ: ՀՍ·

**40** - 4 BMC-416, RIC- էջ 500, C-5.
Թիւ 38ի պէս, ARMEN գրութեամբ: ՀՍ·

## 163 ԴԵԿՏԵՄԲԵՐ — 164 ԴԵԿՏԵՄԲԵՐ

L. VERVS AVG. ARMENIACVS —
TR. P. III. IMP. II. COS II.

**41** ա, բ· – 5 BMC-280, RIC-518.

Հերակլէս կանգնած հանդիպահայեաց եւ մերկ, գլուխը աջ դարձած: Գլխուն առիւծի մորթ մը, որ թեւէն վար կը կախուի: Աջ ձեռքին՝ ձիթապտուղի ճիւղ մը, որ դէպի գլուխը կ'երկարի: Ձախ ձեռքին՝ լախտ մը դէպ ի վար հակած:

Կշիռ՝ 7·2 կրամ: Բրիտ. Թանգ. ՍԿ·



41

**42** - 10 BMC-281, RIC-517, C-237.
Թիւ 41ի պէս:
Կշիռ՝ 7·1 կրամ: Բրիտ. Թանգ. ՍԿ·

**43** - 6 BMC- էջ 425, RIC-510, C-112.
Թիւ 41ի պէս, բայց գրութեան HERC PAC աւելցուած. ՇՀ·

**44** ա, բ· – 1 BMC-294, RIC-522, C-248.
Յաղթանակը թեւաւոր· մինչեւ մէջքը մերկ, կանգնած հանդիպահայեաց եւ գլուխը աջ դարձած: Բռնած է վահան մը, որուն վրայ գրուած է VIC- AVG. վահանը կը հանգչի արմաւենիի բունին վրայ:
Կշիռ՝ 7·2 կրամ: Բրիտ. Թանգ. ՀՍ·



**45** - 9 BMC-296, RIC-524, C-247.
Թիւ 44ի պէս: ՀԱ·

**46** - 10 RIC-525.
Թիւ 44ի պէս: ՀԱ·

**47** - 5 RIC-523.
Թիւ 44ի պէս: ՀԱ·

**48** - 7 BMC-297, RIC-507, C-7.
Թիւ 38ի պէս, ARMEN գրութեամբ:
Կշիռ՝ 7·3 կրամ: Բրիտ. Թանգ. ՀԱ·

**49** - 4 RIC-508.
Թիւ 38ի պէս, ARMEN գրութեամբ: ՀԱ·

**50** ա, բ· - 10 BMC-302, RIC-511, C-157.

Ղուկիոս Վերոս զինուորական զգեստով նստած է ձախ՝ բեմին վրայ դրուած աթոռի մը վրայ: Աջ ձեռքը յառաջ երկարած: Երկու սպաներ կանգնած են իր աջ ու ձախ կողմը: Գետնի վրայ կանգնած է թագաւոր մը — Սոյեմոս — հանդիպահայեաց եւ գլուխը ձախ: Ձեռքը՝ գլխուն կ'երկարէ: Գրութեան վրայ աւելցուած՝ երկու գծի վրայ՝ ստորաբաժնին մէջ, REX ARMEN - DAT. ՃՀ·



**51** - 9 RIC-513, C-165.

Թիւ 50ի պէս, բայց գրութիւնը REX ARMENIIS DATVS ՇՀ·

**52** - 1 BMC-300, RIC-512, C-158.

Թիւ 50ի պէս:

Կշիռ՝ 7·3 կրամ: Բրիտ. Թանգ. ՇՀ·

**53** - 10 RIC-519, C-238.

Թիւ 41ի պէս:

## 164 ԴԵԿՏԵՄԲԵՐ — 165 ՕԳՈՍՏՈՍ

L. VERVS AVG. ARMENIACVS — TR. P. V. IMP. II. COS II.

**54** ա. բ. - 10 BMC-379, RIC-535, C-268.

Հոռմ՝ սաղաւարտով եւ զինուորական զգեստով ձախ կը քալէ. ձախ ոտքը առաջ: Աջ ձեռքով բռնած է Յաղթանակը եւ ձախով՝ շեղակի՝ յաղթութեան նշաններ:

Կշիռ՝ 7·2 կրամ: Բրիտ. Թանգ. ՀՄ·



54

**55** - 10 BMC-383, RIC-534.

Թիւ 44ի պէս: Կշիռ՝ 7·2 կրամ: Բրիտ. Թանգ. ՀՄ·

**56** - 8 BMC- էջ 437, RIC-533, C-267.

Թիւ 44ի պէս: ՀՄ·

**57** - 1 BMC- էջ 437, RIC-531, C-265.

Արէս (MARS) աջ կը քալէ. ձեռքը՝ Յաղթանակը եւ յաղթութեան նշաններ: ՀՄ·

165 ԱՄԱՌ — 165 ԴԵԿՏԵՄԲԵՐ

L. VERVS AVG. ARM. PARTH. MAX. — TR. P. V. IMP. III. COS. II.

**58** ա. բ. – 6 BMC-390, RIC-545.

*Ղուկիոս Վերոս զինուորական հագուստով. ձիով աջ կ'արշաւէ: Աջ ձեռքի նիզակը կ'ուղղէ ձիուն քով ծունկի եկած թշնամիին, որ դէմքը դէպի վեր դարձուցած է:*

*Կշիռ՝* 7.3 *կրամ: Բրիտ. Թանգ.* Հ.Զ.



58

**59** - 10 BMC-391, RIC-543, C-295.

*Թիւ* 58*ի պէս: Կշիռ՝* 7.3 *կրամ: Բրիտ. Թանգ.* Հ.Զ.

**60** - 11 BMC- էջ 438, RIC-544, C-295.

*Թիւ* 58*ի պէս:*

**61** - 1 RIC-539, C-272. *Տես թիւ* 108: Հ.Ս.

*Պարթեւ մը, տաուեւոր, կոնաձեւ գլխարկով եւ անդրավարտիկով, որ մինչեւ ոլոքը կը հասնի: Աջ նստած եւ ձեռքերը ետեւը կապուած: Իր առջեւը կապարճ եւ աղեղ ու նաեւ վեցանկիւն վահան մը. —* *Թիւ* 108*ի պէս:* Հ.Ս.

165 ԴԵԿՏԵՄԲԵՐ — 166 ԱՄԱՌ

L. VERVS AVG. ARM. PARTH. MAX. — TR. P. VI. IMP. II. COS II.

**62** - 10 BMC-415, RIC-549, C,287.

*Թիւ* 58*ի պէս: Կշիռ՝* 7.2 *կրամ: Բրիտ. Թանգ.* Հ.Զ.

**63** - 6 BMC- էջ 442.

*Թիւ* 58*ի պէս:*

**64** բ – 10 BMC-424, RIC-551, C-337.
Տես Թ. 191:

*Յաղթանակը, թեւաւոր, առուեւոր եւ խոյրով՝ ձախ կը թռչի: Երկու ձեռքերուն մէջ բռնած է դափնի մը: Գրութիւնը՝* VICT. AVG. TR. P. VI. COS. II.
*Կշիռ՝ 7·3 կրամ: Բրիտ. Թանգ.* ՀԱ·

**65** - 6 BMC- էջ 443, RIC-552, C-338.
*Թիւ 64ի պէս:*

**66** - 9 BMC- էջ 443, RIC-550, C-336.
*Թիւ 64ի պէս:* ՀԱ·

**67** - 10 RIC-547, C-285.
*Թիւ 61ի պէս:* ՀՁ·

**68** - 8 RIC-558, C-130.
*Խաղաղութիւնը* (PAX) *ձախ կանգնած, առուեւոր, աջ ձեռքը ճիւղ մը եւ ձախ ձեռքին մէջ ամաթեղջիւրը· Թիւ 123ի պէս: Գրութիւնը՝* PAX AVG. TR. VI. COS. II ՀԱ·

**69** — 9 RIC-559.
*Թիւ 68ի պէս:* ԱԿ·

166 ԱՄԱՌ — 166 ԴԵԿՏԵՄԲԵՐ

L. VERVS AVG. ARM. PARTH. MAX. — TR. P. VI. IMP. IIII. COS. II.

**70** - 9 BMC- էջ 444, RIC-567.
*Թիւ 58ի պէս:* ՀՁ·

**71** BMC- էջ 444.
*Թիւ 58ի պէս: Ա. կողմը՝ Ղուկիոս Վերոսի գլուխը ձախ դարձած, դափնեպսակ եւ զրահապատ:*

**72** - 10 BMC-430, RIC-562, C-276.
*Թիւ 44ի պէս, բայց վահանին վրայ գրուած է* VIC-PAR *փոխանակ* VIC-AVG.*ի: Տես Թիւ 76:*
*Կշիռ 7·2 կրամ: Բրիտ. Թանգ.* ՀԱ·

**73** - 9 BMC- էջ 444, RIC-563, C-277.
*Թիւ 72ի պէս: Տես Թիւ 76·* ՀԱ·

**74** BMC- ՀՁ 444, RIC-565.

*Թիւ 72ի պէս։ Ա. կողմը՝ Ղուկիոս Վերոսի գլուխը ձախ դարձած, դափնեպսակ, տուեւոր եւ զրահապատ։* ՍԿ.

166 ԴԵԿՏԵՄԲԵՐ — 169 ԴԵԿՏԵՄԲԵՐ

L. VERVS AVG. ARM. PARTH. MAX. — TR. P. VII. IMP. IIII. COS. III.

**75** ա, բ. – 10 BMC-446, RIC-568, C-52.

*Առատաձեռնութիւնը* (Liberalitas) *տուեւոր, ձախ կանգնած։ Աջ ձեռքին՝ տախտակ մը եւ ձախին՝ ամաթեղջիւրը։ Գրութիւնը՝* CONG. AVG. IIII. TR. P. VII. IMP. IIII. COS. II.

*Կշիռ՝ 6.8 կրամ։ Բրիտ. Թանգ.* ՍԿ.



75

**76** ա, բ. – 9 BMC-448, RIC-571, C-292.

*Թիւ 72ի պէս։*

*Կշիռ՝ 7.4 կրամ։ Բրիտ. Թանգ.* ՀՍ.



76

**77** բ· - 10 BMC-449, RIC-573, C-294.

*Յաղթանակը թեւաւոր, առուեւոր, ձախ կը յառաջանայ: Աջ ձեռքով բռնած է պսակ մը եւ ձախով արմաւենիի ճիւղ մը, որ չեղակի դէպի ձախ ուսը կ'երկարի:*

*Կշիռ՝* 7·3 *կրամ: Բրիտ. Թանգ.* ՀՍ·

**78** - 9 BMC- *էջ* 448, RIC-572, C-293.

*Թիւ* 77*ի պէս:* ՀՍ·

**79** - 8 BMC- *էջ* 448.

*Թիւ* 77*ի պէս:* ՀՍ·

167 ԴԵԿՏԵՄԲԵՐ — 168 ՓԵՏՐՈՒԱՐ

L. VERVS AVG. ARM. PARTH. MAX — TR. P. VIII. IMP. IIII. COS. III

**80** - 6 BMC- *էջ* 451, RIC-581, C-313.

*Թիւ* 77*ի պէս:* ՀՍ·

168 ՓԵՏՐՈՒԱՐ — 168 ԴԵԿՏԵՄԲԵՐ

L. VERVS AVG. ARM. PARTH. MAX. — TR. P. VIII. IMP. V. COS. III.

**81** - 8 BMC-475, RIC-583. (*Տես թիւ* 83)

*Բախտը առուեւոր, ցած նստարանի մը վրայ դէպի ձախ նստած: Աջ ձեռքով բռնած է ղեկը, որ գետինը դրուած է եւ ձախով ամաթեղջիւրը: Գրութիւնը՝* FORT. RED. TR. P. VIII. IMP. V. COS. III.

*Կշիռ՝* 7·3 *կրամ: Բրիտ. Թանգ.* ՀՍ·

**82** - 7 BMC- *էջ* 452, RIC-582.

*Թիւ* 81*ի պէս:* ՀՍ·

**83** ա, բ· - 10 BMC- *էջ* 452, RIC-585, C-110.

*Թիւ* 81*ի պէս: Կշիռ՝* 7·2 *կրամ:* ՀՍ·



83

**84** ա. բ. - 8 BMC- էջ 480, RIC-593.

Հաւասարութիւնը (Aequitas), տաւեւոր, ցած նստարանի մը վրայ դէպի ձախ նստած: Աջ ձեռքը երկարած բռնած է կշիռք մը եւ ձախով ամաթեղջիւր մը:

Կշիռ՝ 7·3 կրամ: Բրիտ. Թանգ. Հ.Ս.



84

**85** - 6 BMC- էջ 452, RIC-591, C-317.
Թիւ 84ի պէս: Հ.Ս.

**86** - 7 BMC- էջ 452, RIC-592.
Թիւ 84ի պէս: Հ.Ս.

**87** - 3 BMC- էջ 453, RIC-587, C-314.
Թիւ 77ի պէս: Հ.Ս.

**88** - 7 BMC- էջ 453, RIC-588.
Թիւ 77ի պէս: Հ.Ս.

168 ԴԵԿՏԵՄԲԵՐ — 169 ՅՈՒՆՈՒԱՐ

L. VERVS AVG. ARM. PARTH. MAX. — TR. P. VIIII. IMP. V. COS. III.

**89** - 10 BMC-497, RIC-596.
Թիւ 83ի պէս: Կշիռ՝ 7·3 կրամ: Բրիտ. Թանգ. Հ.Զ.

## ԼՈՒԿԻՈՍ ՎԵՐՈՍԻ ԱՐԾԱԹ ԴՐԱՄՆԵՐԸ

(DENARIUS)

Այն դրամները, որոնց կշիռը նշանակուած է, կը գտնուին Բրիտանական Թանգարանին մէջ, իսկ ուրիշ թանգարանի անուն չէ յիշուած:

ՄԻՆՉԵՒ 163 ԴԵԿՏԵՄԲԵՐ

L. VERVS AVG. ARMENIACVS —
TR. P. III. IMP. II. COS. II.

**90** ա. բ· - 1 BMC-234, RIC-505, C-220.

*Հայաստան հագած կրկնոց եւ անդրավարտիք, որ մինչեւ ոտքը կը հասնի. կոնաձեւ գլխարկով, տխուր կերպարանքով գետին նստած, ծնօտը յեցած աջ ձեռքին եւ արմունկը կը հասնի աջ ծունկին: Ձախ ձեռքը աղեղին եւ կապարճին վրայ. առջեւը դէպի ձախ ուղղահայեաց դրօշակ* (Vexillum) *եւ վահաններ աջ ու ձախ կողմը:*

*Կշիռ* 3·5 *կրամ:* ՀՍ·



90

**91** - 4 BMC-235, RIC-506, C-221.
*Թիւ* 90*ի պէս: Կշիռ* 3·5 *կրամ:* ՀՍ·

**92** ա. բ· - 1 BMC-239, RIC-501, C-6.
*Թիւ* 90*ի պէս, բայց միայն մէկ վահանով Հայաս–*

տանի ձախ կողմը։ Ստորաբաժնին մէջ ARMEN գրուած։

Կշիռ 3·6 կրամ։ ՀԱ·




92

93 - 1 BMC- էջ 417.

Թիւ 90ի պէս, բայց Ա· կողմը դարձուած թիւ 92ի կնիքով։

94 - 2 BMC- էջ 417.

Թիւ 92ի պէս։ Կշիռ 3·3 կրամ։

ԴԵԿՏԵՄԲԵՐ 163 — ԴԵԿՏԵՄԲԵՐ 164

L. VERVS AVG. ARMENIACVS —
TR. P. IIII. IMP. II. COS. II.

95 ա, բ· - 9 BMC-289, RIC-514, C-228.

Արէս (Mars) սաղաւարտով եւ զինուորական զգեստով կանգնած աջ. աջ ձեռքը բռնած է նիզակ մը դէպի վար եւ ձախ ձեռքը յեցած վահանի մը վրայ, որ կանգնուն է գետնի վրայ։

Կշիռ 3·3 կրամ։ ՀԱ·



95

96 - 1 BMC-282, RIC-515, C-229.

Թիւ 95ի պէս։ Կշիռ 3·5 կրամ։ ՀԱ·

97 - 4 BMC-284.

Թիւ 95ի պէս։ Կշիռ 3·2 կրամ։ ՀԱ·

**98** - 6 BMC-287, RIC-516, C-230.
*Թիւ 95ի պէս: Կշիռ 3·3 կրամ:* ՀԱ·

**99** - 1 BMC- էջ 424, RIC-526, C-255.
*Թիւ 90ի պէս:* ՀԱ·

**100** ա. բ· - 1 BMC-292, RIC-520, C-240.
*Յաղթանակը թեւաւոր եւ տաւեւոր կանգնած ձախ, երկրագունդին վրայ. երկարած աջ ձեռքով բռնած է դափնի մը:*
*Կշիռ 3·0 կրամ:* ՀԱ·



**100**

**101** - 4 BMC-293.
*Թիւ 100ի պէս: Կշիռ 3·0 կրամ:*

**102** - 1 BMC-298, RIC-509, C-8.
*Թիւ 92ի պէս,* ARMEN *դրուժեամբ:*
*Կշիռ 3·4 կրամ:* ՀԱ·

ԴԵԿՏԵՄԲԵՐ 164 — ՕԳՈՍՏՈՍ 165

L. VERVS AVG. ARMENIACVS —
TR. P. V. IMP. II. COS. II.

**103** - 1 BMC-376, RIC-528, C-262.
*Թիւ 95ի պէս: Կշիռ 2·4 կրամ:* ՀԱ·

**104** - 6 BMC-378, RIC-529, C-263.
*Թիւ 95ի պէս:* ՀԱ·

**105** - 10 BMC- էջ 436, RIC-530, C-264.
*Թիւ 95ի պէս:* ՀԱ·

**106** - 1 BMC-380, RIC-536, C-269.
*Թիւ 53ի պէս: Կշիռ 3·2 կրամ:* ՀԱ·

**107** - 6 BMC-381, RIC-537, C-270.
*Թիւ 53ի պէս: Կշիռ 3·3 կրամ:* ՀԱ·

### ՕԳՈՍՏՈՍ 165 — ԴԵԿՏԵՄԲԵՐ 165

L. VERVS AVG. ARM. PARTH. MAX. — TR. P. V. IMP. III. COS. II

**108** ա. բ. - 6 BMC-385, RIC-540, C-273.

*Պարթեւ մը, սաուեւոր, կոնաձեւ գլխարկով եւ անդրավարտիքով, որ մինչեւ ոլոքը կը հասնի, աջ նստած եւ ձեռքերը ետեւը կապուած. առջեւը կապարճ եւ աղեղ ու վեցանկիւն վահան մը: Ասոր պէս է թիւ 61 ոսկին:*

Կշիռ 3·3 *կրամ*: ՀՍ·



108

**109** - 1 BMC-384, RIC-542.

*Թիւ* 108*ի պէս*: *Կշիռ* 3·3 *կրամ*:

**110** - 10 BMC-437, RIC-541, C-274.

*Թիւ* 108*ի պէս*: ՀՍ·

### ԴԵԿՏԵՄԲԵՐ 165 — ՄԱՐՏ 166

L. VERVS AVG. ARM. PARTH. MAX. — TR. P. VI. IMP. III. COS. II.

**111** - 1 BMC-412.

*Թիւ* 108*ի պէս*: *Կշիռ* 3·3 *կրամ*:

**112** - 6 BMC-413, RIC-548, C-286.

*Թիւ* 108*ի պէս*: *Կշիռ* 3·2 *կրամ*: ՀՍ·

**113** - 9 BMC-414.

*Թիւ* 108*ի պէս*: *Կշիռ* 3·2 *կրամ*:

**114** բ· - 6 BMC-416, RIC-546, C-123. *Տես թիւ 75։*

*Առատաձեռնութիւնը* (Liberalitas) *տաուեւոր, կանգնած հանդիպահայեաց, գլուխը ձախ. աջ ձեռքով բռնած արակոս եւ ձախով ամաթեղջիւրը։*

*Կշիռ* 2·9 *կրամ։* ՀԱ·

**115** բ· - 9 BMC-421, RIC-556, C-128. *Տես թիւ 123։*

*Խաղաղութիւնը* (Pax) *ձախ կանգնած, տաուե–ւոր, աջ ձեռքը ճիւղ մը, որ դէպի վար կ'երկարի եւ ձախ ձեռքին մէջ ամաթեղջիւրը։ Գրութիւնը* PAX AVG. TR. P. VI. COS. II.

*Կշիռ* 3·4 *կրամ։* ՀԱ·

**116** - 1 BMC-419, RIC-557, C-129.

*Թիւ* 115*ի պէս։ Կշիռ* 3·1 *կրամ։* ՀԱ·

**117** - 6 BMC-420, RIC-555, C-127.

*Թիւ* 115*ի պէս։ Կշիռ* 3·3 *կրամ։* ՀԱ·

**118** ա, բ· - 6 BMC-423, RIC-560, C-131.

*Բարեպաշտութիւնը* (Pietas) *տաուեւոր, ձախ կանգնած, աջ ձեռքով խունկ կը նետէ՝ խորանի վրայ՝ կրակին մէջ եւ ձախով բռնած է տուփ մը։ Գրութիւնը* PIETAS AVG. TR. P. VI. COS. II.

*Կշիռ* 3·4 *կրամ։* ՀԱ·



**118**

**119** - 1 BMC-422.

*Թիւ* 118*ի պէս։ Կշիռ* 3·4 *կրամ։*

**120** - 6 BMC-425, RIC-553, C-339.

*Յաղթանակը, թեւաւոր, տաուեւոր եւ խոյրով աջ կը թռչի երկու ձեռքերուն մէջ ալ դափնի մը։ Տես թիւ* 191։

*Կշիռ* 3·3 *կրամ։* ՀԱ·

